ՏԵՂԵԿԱԳԻՐ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱՅԻ
ИЗВЕСТИЯ АКАДЕМИИ НАУК АРМЯНСКОЙ ССР
Հասարակական գիտություններ № 3—4, 1945 Общественные науки

Լ. Մելիքսեթ-Բեկ

# ՄԻ ՎԿԱՅՈՒԹՅՈՒՆ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԴԱՏԱԿԱԶՄՈՒԹՅԱՆ ԵՎ ԴԱՏԱՎԱՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ ԶԱՔԱՐՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

(Մի էջ հայ և վրաց իրավունքի պատմությունից)

*Մեր՝ թե օրենսդրական-իրավական (նորմատիվ) և թե պատմական (նարրատիվ) աղբյուրները շատ քիչ տեղեկություններ են պահպանել ֆեոդալական Հայաստանում եղած ոչ միայն վերագույն, այլ և սովորական դատակազմության և դատավարության մասին։*

*Մխիթար Գոշի Դատաստանագիրքը թերևս միակ աղբյուրն է, ուր «Նախադրության» 11 գլուխների մեջ մանրամասն խոսվում է մեզ հետաքրքրող հարցի շուրջը,*[1] *սակայն այն ոչ մի պատկերացում չի տալիս վերագույն դատակազմության և դատավարության արտակարգ մոմենտների, ինչպես և այսպես կոչված* jus appelationis-*ի կամ թե բեկման իրավունքի գոյության մասին հին Հայաստանում։*

*Հայ իրավունքի պատմության ուսումնասիրության նվիրված մասնագիտական գրականության մեջ ևս ոչ մի հետազոտողի կամ հրատարակչի մտքով անգամ չի անցել ծանրանալ այսպիսի մի խնդրի վրա։ Այսպիսի են՝ Ղուկաս վ. Ինճիճյանի «Հնախոսություն աշխարհագրական Հայաստանեայց աշխարհի» (հ. II. Վեն., 1835, էջ 308--310), Ա. Մ. Գարագաշյանի «Քննական պատմություն Հայոց» (մասն Բ, Թիֆլիս, 1895, էջ 10—17),* Josef Kohler-*ի* „Das Recht der Armenier» *և* «Grundriss der Geschichte des armenischen Rechtes“ (Zeitschrift fur vergleichende Rechtswissenschaft, VII B., 1887. SS. 385—436, $XX_1$ B., 1907, SS. 93—99), Josef Karst-*ի* „Sempadscher Kodex aus dem 13. Jahrhundert“ (Strassburg, 1905, SS. 339—400), *Խաչիկ Սամուելյանի «Մխիթար Գոշի Դատաստանագիրքը և հին հայոց քաղաքացիական իրավունքը» (Վիեննա, 1911, էջ 109—178) և «Հին հայ իրավունքի պատմությունը» (հ. 1, Երևան, 1939). Վարդան վ. Հացունու «Երդումը հին Հայոց մեջ» (Վենետիկ. 1910) ևն։*

*Այսպիսի պայմաններում միանգամայն պարզ պիտի լինի և հասկանալի արժեքն այնպիսի տեղեկությունների, որ պատահմամբ հասել են մեզ մեր պատմիչների վկայությունների ձևով, ինչպիսին է, օրինակ, Սյունեցի Ստեփանոս Օրբելյանի հաղորդածը Զաքարյան Հայաստանում տեղի ունեցած մի արտակարգ երևույթի մասին։*

---

1 *Դատաստանագիրք Հայոց. հրատ. Վահան վ. Բաստամեան, Վաղ., 1880, էջ 5—75։*

Իր «Պատմութիւն Տանն Սիսական» նշանավոր երկի մեջ խոսելով Նորավանքի «եղերահռչակ և փառաւոր ուխտի» «շինութեան և նախապատիւ գահերիցութեան», ինչպես և «հոգեցասուր ժառանգութեանց նորա (Նորավանքի) և այլ շինութեանց և արդեանց» մասին, «որ եղև ի Լիպարտէն և յիշխանացն Օրբէլեանց» (գլ. 63 [64] և 64 [65]), Ստ. Օրբելյանն առանձնապես կանգ է առնում «աստուածընկալ» և «սքանչելագործ» սուրբ խաչի շուրջը Նորավանքից և Գնձահանից, ասել է հակաքաղկեդոնիկ (հայադավան) և քաղկեդոնիկ (վրացադավան)՝ վանքերի միջև Հայաստանում առաջացած վեճի նկարագրության վրա, որի լուծման համար գերագույն պետական իշխանության կողմից նպատակահարմար և անհրաժեշտ համարվեց դատաստանական գերագույն մարմին ստեղծելը և գործն արդարացի ձևով քննելու։

Սակայն նախ քան այս դատաստանական գերագույն ատյանի մասին մեր եզրակացությունները հանենք, ծանոթանանք գործի էության հետ՝ համաձայն Ստ. Օրբելյանի վկայության։

* * *

I

«[Եւ մահուան տեառն Յովհաննիսի]... ի թուին Հայոց 663 (=1214)... եկն տէր Ստեփանոս շնորհազարդն, որ և Դախըրլըմահէ կոչեցաւ յԱթաբակէն, և բնակեցաւ ի սուրբ ուխտն Նորավանից... Եւ [ի 664 (=1215) թ.] էր տեառն Ստեփանոսի եղբայր գրաւական պատուածամուխ սուրբ նշանն, զոր էր Յովհաննիսի [Նորավանից հանգուցեալ եպիսկոպոսի՝] զաւագ խաչն և զթիթեղնականն և զկամարականն... Զոր և իմացեալ կողմնակալի այսմ կողմանց Վասակայ իշխանի՝ հօր Պռոշայ, առնու բռնարար գերիս զայս աստուածացեալ սուրբ նշանս և տարեալ զաւագ խաչն ընծայէ Աթաբէկին Իվանէի և զերկուսն՝ զթիթեղնականն և զկամարականն տարեալ դնէ յիւրում վանսն ի Կեչառուս ուխտի։ Ապա ի 665 թուականին (=1216) մինչ կայր Աթաբէկն Իվանէ ի խառն[1] ի վերայ բերդոյն, որ Չարէքն կոչի, գնայ տէր Սարգիս հրամանաւ և գրով քեռւոյն իւրոյ տէր Ստեփանոսի առաջին Աթաբէկին և խնդրէ աստուածընկալ սուրբ խաչին։ Եւ զի էր նորա զօրական և հրամանատար ի վերայ ամենայն իշխանութեանց իւրոյ և աւագ հէջուպ մեծ և բարեպաշտ իշխանն Բուպակ կոչեցեալ. և էր սա աներ Լիպարտի՝ որդւոյ Եղիկումին, և Լիպարիտն յոյժ սիրեցեալ էր յաչս Իվանէի. և խաչն կայր ի պահեստի ի Գնձահանն։

«Յանդիման առնեն զեպիսկոպոսն Աթաբէկին և մատուցանեն զգիրն. և ինքեանք մեծապէս հոգ յանձին կալեալ ջանային թափել զգերեալն. և բազում զանձս ծախեալ ի մեծամեծսն և ի ներքին խորհրդականսն. Բարեպաշտ Լիպարիտ 300 դահեկանի չափ ընծայէ և տէրս Աթաբէկին 500 դահեկան կարմիր յագնուական ոսկւոյ, և այնպէս իբր գնով առնելով հաճեցաւ զմիտս նորա դարձուցանել անդրէն։ Ապա հրամայէ կոչել զեպիսկոպոսն և դնէ պայման նմա և ասէ. «Եթէ որ կամի զսրբոյ նշանին անդրէն դառնալն՝ առցէ վաղիւն զբերդս զայս ի ձեռս իմ, և ես տամ զնա ի ձեռս քո, ապա թէ ոչ՝ դառնաս ունայն»։

«Իսկ ընդ լուսանալ առաւօտուն՝ զօրութեամբ սուրբ խաչին, բերեն բերդացիքն ինքնայօժար կամօք զբանալի բերդին և դնեն առաջի Աթաբէկին։ Բերեն ընդ նմին այլ ես երիս բանալիս բերդից. և դնեն առաջի։ Ընդ որ յոյժ խնդացեալ և զարմացեալ ընդ սքանչելիսն՝ հրամայէ աւագ ծիկնաւորին իւրոյ զիւանին Աւնաւփրէ անուն գնալ ընդ տեառն Սարգսի և տալ զխաչն ի նա ի Գնձահանքն ուխտի, որ և սա ժամայն կատարեցաւ։ Եւ նորա գնացեալ առնու զխաչն խնդութեամբ, և անցեալ փութանակի զայ, հասանէ ի Նորավանս ուխտ. և բնակեցուցանէ անդէն զսուրբ նշանն. որ և եղիտ վախճանեալ զբեռին իւր տէր Ստեփանոս. բայց առաւ ի գինս գերեալ խաչին ի Լիպարտէ 1000 դահեկան կարմիր, որպէս ասացաք։ Իսկ թիթեղնականն և կամարականն մնացին անդէն ի Կեչառուս։

1 Այսինքն՝ ի պաշարումն.

II

«... Լինի աղմուկ վասն սուրբ խաչին և գնան երկոքին եպիսկոպոսքն (այսինքն՝ Ստեփաննոս և Սարգիս) և Լիպարիտն և որդին իւր Ելիկումն ի դատաստան առ Աթաբէկ Իվանէն ի Դվին։ Եւ նորա նստուցեալ զմեծամեծս իւր հրամայէր քննել զԲուղակն և զՄարծուանն, զԻվան զպէլն և զՄեծմուշաղեղն. զմեծ ճղաւնգիտէլն՝ որ եկեալ էր ի Թագաւորութենէն, զծիրան ծղաւրն Վարձէոյ և զծիրան ծղաւրն Գղնձահանից և զմեծ մամթափորն Գարշաէուցն, զԴադեցին և զՄածնաբերդեցին և այլ բազում զէզեզունք եւ և զդատին Տփղեաց և զդատին Անւոյ և զդատին Դվնայ և զանուանի չեխն Սուրմարւոյ, ընդ որոց և զմեծ եպիսկոպոսն Անւոյ և զեպիսկոպոսն Բջնւոյ և զեպիսկոպոսն Հաղբատայ. որք և քննեալ իրաւունք գտեալ այսպէս եթէ՝ Մեռեալն և գերեալն զմի ունին օրէնս. որ քո զմեռեալն յարուցանէ՝ ոչ է ծնողացն ծնունդ, այլ նորոգողին գնա. և որ ոք զգերեալն թափէ, ոչ է առաջողին յանձնեալ, այլ գերաթափին։ Արդ, որպէս աշխարհս այս առաւել սրոյ և ձեռին սեպհական կոչի ժառանգութիւն Վրաց թագաւորութեան, այնպէս և այն խաչ սեպհական էր Իվանէի և ի տալն գնա ի Լիպարիտ և ի տէր Սարգիս բազում ծախուք մինչ ի 1000 դահեկան. Լիպարիտ և իւր եկեղեցւոյն է պարտ լինել յաւիտենական ժառանգութիւն։

«Ապա այսպէս դատաստանի յոյժ հաճութեամբ հաւանեալ Աթաբէկին և ամենայն բազմութեան ազատակոյտ իշխանացն՝ հրամայեցին ունել զխաչն անդային և անհամիմաղ Լիպարիտ և իւրոցն»։[1]

* * *

Ստ. Օրբելյանի հաղորդագրությունը, ինչպես տեսնում ենք, բաղկացած է 2 հիմնական մասից. առաջինում տրված է գործի եղելության պատմությունը, իսկ երկրորդում՝ դատաստանական արտակարգ ատյանի կազմի և դատավարության նկարագրությունը։

Երկրորդ մասն էլ, իր հերթին, ի նկատի ունի 3 մոմենտ. 1. դատաստանական ատյանի կազմը, 2. այդ կազմի կայացրած դատավճիռը, և 3. վերջինիս հասատումը գերագույն պետական մարմնի կողմից։

Այժմ անցնենք Ստ. Օրբելյանի վկայության մանրամասնություններին։

Պատմիչի հիշատակած վեճը ծագել է Իվանե Աթաբակի օրոք, 1215 թվին, հետևապես՝ Վրաստանում Գիորգի Լաշայի թագավորության (1213—1222) և Սյունիքում Վասակ իշխանի կողմնակալության պահին։

Վիճելի առարկան եղել է Լիպարիտաշեն Նորավանքի «գերահռչակ և փառաւոր ուխտին» պատկանող «աստուածընկալ սուրբ նշանը», այն է՝ «սքանչելագործ խաչն», որ մի ժամանակ գրավական է եղել դրված հիշյալ վանքում, իսկ 1216 թվին Վասակ իշխանը՝ խախտելով պայմանագիրը՝ հանել էր այն իր տեղից և ընծայել Իվանե Աթաբակին, որ և դրել էր այն «ի պահեստի ի Գղնձահանքն»։ Հայցողի դերում հանդես են գալիս Ստեփանոս և Սարգիս՝ Նորավանքի եպիսկոպոսները, Լիպարիտ Սյունյաց իշխանը և նրա որդի Ելիկումը։ Պատասխանողի դերում է Գղնձահանքը։ Դատավարության տեղն է Դվին քաղաքը։

Դատաստանական ատյանը՝ ճանաչելով, որ «այն խաչ սեպհական էր Իվանէի», սակայն ի նկատի առնելով, որ նախ քան այդ՝ Լիպարիտ իշխանը և Նորավանքի Սարգիս եպիսկոպոսը «բազում ծախուք մինչ ի 1000 դա-

---

[1] Ստեփանոսի Սիւնեաց եպիսկոպոսի Պատմութիւն Տանն Սիսական, ի լոյս ընծայեաց Մկրտիչ Էմին, Մոսկվա, 1861, էջ 257—261։ Պատմութիւն նահանգին Սիսական արարեալ Ստեփաննոսի Օրբէլեան արքեպիսկոպոսի Սիւնեաց. Տիփլիս, 1910, էջ 352—356։

[2] Հմմ. Ղ. Ալիշան, Սիսական, Վեն., 1893, էջ 20։

հեկանի» գիծեւ էին ուն Նորավանքին, որոշում է, որ «Լիպարտի և իւր եկեղեցւոյն (այսինքն՝ Նորավանքին) է պարտ լինել յաւիտենական ժառանգութիւն»։ Ապա ատյանի հանած դատավճիռը «յոյժ հաճութեամբ» հավանութիւն է ստանում Իվանե Աթաբակի և «ամենայն բազմութեան ազատակոյտ իշխանացն» կողմից. այսինքն վավերացվում է և հաստատվում գերագույն պետական իշխանության կողմից։

Ինչ վերաբերում է դատաստանական ատյանի կազմին, այն ըստ Ստ. Օրբելյանի վկայության բաղկացած է եղել ad hoc ժողոված 6 խավի ներկայացուցիչներից, որոնք են. 1. վրաց արքունիքը՝ հանձինս «մեծ ճղաւնդիտէլ»-ի, «որ եկեալ էր ի թագաւորութենէն», 2. վրաց ազնվականությունը՝ հանձինս «Մեծմաչաղէլ»-ի և «բազում ղէղեպուլ»-ների, 3. հայ ազնվականությունը՝ հանձինս Րուպակ և Մարծուան իշխանների, նաև Գագի և Մածնաբերդի տերերի, 4. վրացադավան (քաղկեդոնիկ) հոգևորականությունը՝ հանձինս «Իվան դպէլ»-ի, «Վարձէոյ» և «Պղնձահանիցն» «ծիրամ ծղաւրն»-երի ու «Բարշտէուցն» «մամթավար»-ի, 5. հայադավան (հակաքաղկեդոնիկ) հոգևորականությունը՝ հանձինս «Անւոյ» «մեծ եպիսկոպոս»-ի, նաև «Իջնոյ» և «Հաղբատայ» եպիսկոպոսների, և 6. մահմեդական հոգևորականությունը՝ հանձինս «Տփղեաց», «Անւոյ» և «Դվնայ» դատիների և «Սուրմարվոյ» «անուանի շեխ»-ի։

Հետևապես, մահմեդական հոգևորականությունը քրիստոնեական եկեղեցուն վերաբերյալ խնդրում նույնպիսի հեղինակությամբ է եղել օժտված, ինչպես վրացադավան և հայադավանները, որ այն ժամանակ գոյություն ունեցող խղճի կատարյալ ազատության փայլուն ապացույցն է։

Հայկական և վրացական աղբյուրները, բարեբախտաբար, մեզ հնարավորություն են տալիս եթե ոչ լիովին, գոնե հիմնականում «հականե-հանվանե» ճշտել Ստ. Օրբելյանի հաղորդած ցուցակը, որ անցյալում թե՛ ակադ. Իվ. Ջավախիշվիլու և թե մասամբ էլ մեր կողմից մի երկու կետում ուղիղ չի մեկնաբանվել, որի հետևանքով, օրինակ, Ստ. Օրբելյանի «Րուպակ»-ը վերածվել էր «փիղերուլ»-ի և «Մարծուան»-ը «մարզպան»-ի,[1] իսկ «Բարշտէուցն» մի դեպքում (1914 թ.) թարգմանվել է իբրև «Գարեսջիի» (վրացերեն՝ «գարեսջիսա»),[2] իսկ մյուսում (1929 թ.)՝ կապվելով Գագի և Մածնաբերդի հիշատակությունների հետ՝ տվել է տարօրինակ ձևակերպում հետևյալ իմաստով. «Բարշտիի (?), Գագի և Մածնաբերդի մեծ հայրապետները»։[3]

1. Վրաց արքունիքի ներկայացուցիչը՝ «մեծ ճղաւնդիտէլ»-ը՝ դա նույն «աւագ ծիկնաւպարն... դիվանին Աւնաւփրէ անուն» կրող անձնավորությունն է, այսինքն վրաց արքունիքի ավագ դիվանադպիրը կամ դպրապետը և առաջին վեզիրը կամ վեզիրապետը, որ վրացերեն կոչվում էր «մծիգնոբարթ ուխուցեսի դա վազիրթա ուպիրվելեսի», նույնիսկ «պրոտոսեբաստ-

[1] Իվ. Ջավախիշվիլի, Վրաց ժողովրդի պատմությունը, վրացերեն. II, Թբ., 1914, էջ 855. Հմմտ. Լ. Մելիքսեթ-Բեկ, Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, II, Երևան, 1936, էջ 67։

[2] Նույն տեղը։

[3] Իվ. Ջավախիշվիլի, Նույն տեղ. էջ 655. Նույնի—Վրաց իրավունքի պատմությունը, վրացերեն. II$_1$, Թբ., 1929, էջ 480.

տիմոս», կամ «պրոտոպերտիմոս»,[1] որ սովորաբար կապված էր Մարտվիլի նաև Ճղոնդիդի (Սամեգրելոյում) արքեպիսկոպոսական-մետրապոլտական կոչումն կրող աթոռակալի հետ։ Ուստի և այդ եկեղեցականը կոչվում էր «Ճղ'ոնդիդելի», որ Ստ. Օրբելյանի ստորագրությամբ «Ճղաւնդիտէլ»-ի է վերածվել, իսկ Հաղարծնի 1184 թ. մի արձանագրության մեջ նույնիսկ «Ճղունտել»-ի, որ ոմանք սխալմամբ «ճպունակլի» էին կարդում։ Ի դեպ, նշենք, որ Հաղարծնի 1184 թ. արձանագրության մեջ հիշված «ճղունտելի»-ն Անտոն (Անտոնի) անունն է կրում, մինչդեռ Օրբելյանի ժամանակ 1216 թ. ատյանին ժամանակցողը եղել է «Աւնափրէ»-ն, այսինքն Օնոփրեն, որ հայերենում համապատասխանում է «Օնոփրիոս»-«Ոնոփրիոս»-ին։

2. Վրաց ազնվականության կողմից հիշված են «բազում դէդեպուլք», այսինքն մեծամեծներ—իշխաններ և, մասնավորապես, «Մեծնաշաղէլ»-ը, որ նույն՝ Օրբելյանի պատմության մեջ այլուր (գլ. 65[66]) հիշված «Զաղելմեծնայ»-ն պիտի լինի, այսինքն «Մեծնա Զաղելի»-ն կամ «Զաղեցի Մեծնա»-ն։ Այս անձնավորությունը վրաց աղբյուրներում չի երևում։

3. Հայ ազնվականության ներկայացուցիչներից Բուպակ և Մարծուանը քաջ ծանոթ են հենց հայկական աղբյուրներից։

Բուպակին Ստ. Օրբելյանը անվանում է Իվանե Աթաբեկի «գործակալ և հրամանատար ի վերայ ամենայն իշխանութեանց իւրոյ և աւագ հէջպաց, մեծ և բարեպաշտ իշխանն Բուպակ կոչեցեալ», որ էր «աներ Լիպարտի՝ որդւոյ Ելիկումին»։ Նույնը հիշվում է Նորավանքի 1223 թ. վիմական ընդարձակ արձանագրության մեջ, ուր, ի միջի այլոց, կարդացվում է հետևյալը. «Ի ժամանակի թագաւորութեանն որդւոյ Թամարին Լաշային, յամիրսպասալարութեան Իվանէի հաւրեղբաւր Նորին ես մեղուցեալ ծառայ Քրիստոսի Բուպակ՝ իշխանաց իշխան, եկի ի նաւակատիս սուրբ եկեղեցւոյս Նորավանից առ երջանիկ հայրապետս մեր տէր Սարգիս և ընծայեցի ի հալալ հայրենեաց իմոց. զոր իմ բազկաւս առեալ էի յայլազգեաց և իմ արեամբս թափեալ զԱղբերիս գիւղ իւր ամէն սահմանաւն, ի սուրբ եկեղեցիս Նորավանից՝ ի սուրբ Կարապետս և ի սուրբ Նախավկայս տուի ազատ յամէն հարկաց... ի թուին հայոց ՈՀԲ (=672 [1223])»։[4]

Մարծուան կամ Մարծպանը հիշվում է Լոռի-Ձորագետի շրջանի մի շարք վիմական արձանագրությունների մեջ «յիշխանութեան մեծի Մարծպանայ»՝ Դսեղի 1204 թ. ներքո,[5] նաև Սանահնի 1211 թ. ներքո.[6] «Ես Մարծպան, որդի Սարգսի, թոռն Համազասպեանց, յազգէ Մամիկոնեանց, շինեցի զվանս և զամէն եկեղեցիքս և արար ինձ տուն և գերեզմանատեղի»՝

---

[1] Սարգիս Կակաբաձե, Շիոմղվիմեի երեք սիգել, վրացերեն, Թբ., 1912, էջ 7։

[2] Իվ. Ջավախիշվիլի, Վրաց իրավունքի պատմությունը, II$_1$, էջ 124—140։

[3] Л. Меликсет-Беков, Одна из подписей Агарцинского монастыря.—„Христ. Восток", т III, 1915, стр. 197—198. Լ. Մելիքսեթ-Բեկ, Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, I, Եր., 1934, էջ 221։

[4] Ղ. Ալիշան, Սիսական, 166. Կ. Կոստանեանց, Վիմական տարեգիր, էջ 67. Համմ. Ե. Լալայան, Վայոց-ձոր. Նշանաւոր վանքեր—«Ազգագրական հանդէս», XXVI, 1916, էջ 20։

[5] Ս. Ջալալեանց, Ճանապարհորդութիւն ի մեծ Հայաստան I, 117 = Կ. Կոստանեանց, Վիմական տարեգիր, 46։

[6] Ս. Ջալալեանց, I, 24 = Կ. Կոստանեանց, 32։

Դսեղի 1221 թ. ներքո։[1] XIII դարու 30-ական թվականների վերջերից սկըսած նույն շրջանի այլ արձանագրությունների մեջ հիշվում են Մարծպանի զավակները. «Գրիգոր որդի Մարծպանայ»՝ Դսեղի 1239 և 1241 թթ.,[2] և «Ասլանբէկ, որդի Մարծպանայ»՝ նույն Դսեղի 1245 թ.։[3]

Իսկ Գագի և Մածնաբերդի (Մահկանաբերդի) տերերի անունները չեն հիշված։

4. Վրացադավան (քաղկեդոնիկ) հոգևորական դասից չհաշված ճղոնդիդելուն, Ստ. Օրբելյանը անունով հիշում է միմիայն մեկին՝ «Իվանե դպէլս»-ին, մյուս երեքին լոկ կոչումով։

«Իվանե դպէլս»-ը՝ դա նույն Իվանե կամ Հովհան Տբեթի (Տայք-Կղարջքում) եպիսկոպոսն է, որ հիշատակված է Թամար թագուհու ժամանակվա (1184—1213)՝ Տբեթի տաճարի մի երկաթագիր վրացերեն արձանագրության մեջ։[4]

«Ծիրամ ծղաւրն» ակնհայտ աղավաղումն է վրացերեն «ծինամձղուարի» կամ «ծինամձղվարի»-ի,[5] որ նշանակում է վանահայր, առաջնորդ վանից (ռուսերենում игумен, настоятель монастыря)։ Հետևապես դատաստանական ատյանի մասնակիցներից երկուսը եղել են Վարձիի (Մեսխեթ-Ջավախքում) և Պղնձահանքի (Լոռիի թե՞ Բջնիի)[6] քաղկեդոնիկ վանքերի առաջնորդ-վանահայրերը։

«Մամթավար» ևս աղավաղումն է վրացերեն «մամաթ-մթավարի»-ի, որ նշանակում է հայրապետ, պատրիարք, երեցապետ, բայց և նեղ մտքով՝ վանահայր, առաջնորդ վանից։ Որեմն «մեծ մամթավարն Գարշաէուցն» ասելով՝ Ստ. Օրբելյանը մատնանշել է Գարեսջիի (Ղարայազ կայարանից 30 կմ. հեռավորությամբ, Կուր գ. դեպի հյուսիս) «Բազմալերանց» (մրավալմթա)՝ նույնպես քաղկեդոնիկ անապատների վանահոր վրա, որ սովորաբար եպիսկոպոսի կամ արքեպիսկոպոս-մետրապոլիտի աստիճան է ունեցել և, ըստ այնմ, կոչվել է «ձեռնադրող արքիմանդրիտ» (մակուրթխեվել-արքիմանդրիտի), որ ռուսերենում священно-архимандрит-ին է համապատասխանում։[7]

Այսպիսով «մամաթմթավարի»-ն տարբերվել է «ծինամձղվարի»-ից։

5. Հայադավան (հակաքաղկեդոնիկ) հոգևորականության աստիճանավորներից դատաստանական ատյանին մասնակցել են Անիի «մեծ եպիսկոպոսը», այսինքն «երիցապետ եպիսկոպոսը» կամ «արքեպիսկոպոսը», նաև Բջնիի և Հաղբատի եպիսկոպոսները։

Հիշյալ ժամանակամիջոցին (1216) Անիի արքեպիսկոպոսական աթոռը

---

[1] Ս. Ջալալեանց, I, 113=Կ. Կոստանեանց, 64։

[2] Նույն տեղ, I, 110, 114=Կ. Կոստանեանց, 81, 83։

[3] Նույն տեղ, I, 108, 114=Կ. Կոստանեանց, 88—89։

[4] Н. Марр, Дневник поездки в Шавшетию и Кларджетию,—„Тексты и разыскания по армяно-грузинской филологии", кн. VII, Спб. 1911, стр. 12.

[5] Հմմտ. Հր. Աճառյան, Հայերեն արմատական բառարան, VII, 1935, էջ 147 (ըստ մեր ցուցմունքի)։

[6] Լ. Մելիքսեթ-Բեկ, Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, II, 64—69։

[7] Լ. Մելիքսեթ-Բեկ, Գարեսջիի Բազմալերանց հայկական էպիգրաֆիկան և պոլիգլոտ՝ վրացերեն-հայերեն-պարսկերեն-ույղուրերեն արձանագրությունը, վրացերեն.— ИЯМК, V—VI (Հոբելենական ժողովածու, նվիրված ակադ. Իվ. Ջավախիշվիլու գիտական գործունեության 40-ամյակին). Թբ., 1940, էջ 153—175։

գրված է ունեցել Գրիգոր՝ որդի Ապուղամրի, որի անունը նշված է Անիի 1217 և 1218 թթ. հայերեն արձանագրությունների մեջ. առաջինում իբրև «արհիեպիսկոպոս»,[1] իսկ երկրորդում (Եպիփան վրաց կաթողիկոսի 1218 թ. վրացերեն արձանագրության հայերեն post scriptum-ի մեջ)՝ «երիցապետ եպիսկոպոս».[2] այսինքն «ավագ եպիսկոպոս» կամ արհի։

Մյուս՝ զույգ եպիսկոպոսներից Բջնիի աթոռակալի անունը չի երևում, իսկ Հաղբատինը թերևս Հովհաննես Խաչենեցին լինի, որ հայտնի է Զորագետի վիմական արձանագրություններից 1195—1226 թթ. շուրջը։[3]

6. Մահմեդական հոգևորականության ներկայացուցիչների, այն է Թբիլիսիի, Անիի և Դվինի դատավորների ու Սուրմարիի անվանի շեյխի անունները մնում են անհայտ։

* * *

Ահա այսպիսի ընդարձակ կազմով Դվինում 1216 թ. ժողոված աշխարհիկ և հոգևորական դասերի ներկայացուցիչները՝ իբրև արտակարգ գերագույն դատաստանական ատյան՝ վճիռ են կայացրել Նորավանքի սրբանվիրագործ խաչի ում պատկանելու վիճելի խնդրի շուրջը, որ ապա հավանություն է գտել ու վավերացվել բարձր իշխանության կողմից։

Л. Меликсет-Бек

## По поводу одного свидетельства об устройстве и процессе высшего суда в Захаридской Армении

(Страница из истории армянского и грузинского права)

### РЕЗЮМЕ

В связи с крайней скудостью данных как нормативного, так и нарративного характера относительно судоустройства и судопроизводства в феодальной Армении и отсутствием подлежащей полноты в соответствующей научно-правовой литературе, посвященной истории армянского процессуального права (Л. Инчичян, А. Гарагашян, J. Kohler, J. Karst, X. Самуэлян, В. hAацуни и др.), автором настоящей статьи дается попытка анализа свидетельства армянского исто-

[1] Ղ. Ալիշան, Շիրակ, Վեն., 1881, էջ 63—64։

[2] *E. Boré*, Les Ruines d'Ani—„Le Correspondant revue mensuelle", 1-re Année—3-e livraison, Paris, 1843, p. 322; *Н. Марр*, Надпись Епифания, католикоса Грузии,—„Известия Академии Наук", 1910, стр 1439; Յ. Օրբելի, *Անիոյ աւերակները, Վաղարշապատ, 1911, էջ 57 (=«Արարատ» ամսագիր, 1911, օգոստոս, էջ 666)*; *Н. Марр*, Ани, Книжная история и раскопки на месте городища. Л.-М. 1934, стр. 85 и табл. XLII, рис. 182; *В. Дондуа*, К социально-экономической жизни средневековой Грузии по Анийской надписи (1218) Епифания,—„Академия Наук СССР, XLV, Академику Н. Я. Марру", М.-Л. 1934, стр. 649; Իվ. Ջավախիշվիլի, *Սոցիալական պայքարի պատմությունը Վրաստանում* IX—XIII *դարերում, վրացերեն, Թբ., 1934, էջ 11*, Իվ. Ջավախիշվիլի, *Նյութեր Հայաստանի սոցիալական շարժումների պատմության համար, թարգմ. վրացերենից Լ. Մելիքսեթ-Բեկ, Երևան, 1936 (1937), էջ 29։*

[3] Ս. Ջալալյանց, I, *66.* Ստեփաննոս Օրբելյան, *Համառոտ պատմութիւն Հաղբատայ աշխարհահռչակ վանից, Վաղ., 1886, էջ 58.* Կ. Կոստանեանց, *Վիմական տարեգիր. 63.* Լ. Մելիքսեթ-Բեկ, *Վարդապետք Հայոց հիւսիսային կողմանց, վրացերեն, Թբ., 1928, էջ 175—177, 179։*

рика XIII в. Стефана Орбеляна (Истории Сюнии, гл. 63 [64] и 64 [65]) по данному вопросу.

Свидетельство Ст. Орбеляна касается высшего судилища, созванного в чрезвычайном порядке, для рассмотрения спора, возникшего в 1215 г. между Нораванкской антихалкедонитской (в Сюнии) и Пгндзаhанкской халкедонитской (в Лори или Бджни?) обителями спора относительно Нораванкского животворящего креста, который подарен был князем Васаком Сюнийским Иванэ Атабаку, а последним—Пгндзаhанкскому монастырю.

Суд был созван по распоряжению Иванэ Атабака, с санкции грузинского царского двора, в гор. Двине в 1216 г. из многочисленных представителей светской и церковной иерархии, в следующем составе, как свидетельствует Ст. Орбелян: „Бупак и Марцуан, Иван Тбели и Мемнаджакели, великий Чкондидели, явившийся от царского дома, настоятель Вардзии и настоятель. Пгндзаhанка, а также великий архимандрит Гаресджы, Гагец и Мацнабердец, и много других вельмож, также кадий Тбилисский и кадий Анийский и кадий Двинский и именитый шейх Сурмалинский, и с ними великий епископ Анийский, и епископ Бджнийский и епископ Ахпатский".

Однако, список членов верховного судилища, ad hoc созванного в Двине в 1216 г., нуждается в пересмотре, уточнении и, что самое главное, перегруппировке имен участников соответственно их сословно-кастовой и конфессиональной принадлежности, как мы предлагаем, по 6 признакам, с последующим сведением таковых к 6 основным группам:

1. Представитель грузинского царского двора, царского дома (и, одновременно, грузинской высшей церковной иерархии)—первый визирь, государственный секретарь и Чкондидский митрополит Онофрий.

2. Представители грузинской феодальной знати—Мемна Джакели и другие вельможи.

3. Представители армянской феодальной знати—князь Бупак, тесть Липарита Еликумовича Орбеляна, главный камергер или гофмейстер; князь Марцуан или Марцпан, сын Саргиса, внук Амазаспа, Мамиконян Дсегский; а также владетели Гага и Мацнаберда или Маhканаберда (по-груз. Манкаберда), имена коих не устанавливаются.

4. Представители грузинского (халкедонитского) духовенства—Иван или Иоанн, епископ Тбетский (в Тао-Кларджии); священно-архимандрит, т. е. архиепископ или митрополит, Гареджийских пустынь (около нын. Караяз, к северу от Куры); и настоятели-игумены халкедонитских монастырей Вардзийского (в Месхии-Джавахети) и Пгндзаhанкского (в Лори или Бджни?).

5. Представители армянского (антихалкедонитского) духовенства: Григорий, сын Апугамра, архиепископ Анийский; Иоаннес Ха-

ченец, епископ Ахпатский; и епископ Бджнийский, имя которого не устанавливается.

6. Представители магометанского (мусульманского) духовенства: кадии Тбилисский, Анийский и Двинский, а также „именитый“ шейх Сурмалинский, имена коих также остаются неустановленными.

Нужно еще отметить, что решение чрезвычайного верховного суда было основано на принципе полной веротерпимости и свободы совести, при участии в споре между антихалкедонитской и халкедонитской сторонами, как между истцом и ответчиком, третьей совершенно нейтральной конфессиональной группы в лице 4-х духовных сановников из магометан; причем таковое (решение), вынесенное в пользу Нораванкского монастыря, т. е. антихалкедонитской стороны, было одобрено и утверждено Иванэ Атабаком, который, как известно, был халкедонитом.